Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՄԱՐՏ 5 1961



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։


# ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Նախընտրական կամպանիաների ժամանակ հանրագումարի են բերվում Սովետների աշխատանքի արդյունքները, անցած ժամանակամիջոցում դեպուտատների աշխատանքի արդյունքները։ Եվ, ինչպես միշտ, մարդիկ աշխատում են այդպիսի տարեթվերը դիմավորել լավագույն նվաճումներով...»։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*

*Մարտի 19-ը Սովետական Հայաստանի պետական իշխանության տեղական օրգանների ընտրությունների օրն է։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները արժանավայել գործերով են դիմավորում ընտրությունները։ Ի պատիվ հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարի, ամենուրեք ծավալվում է նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը։ Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները ջանք չեն խնայում յոթնամյակը ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարելու*

համար։ Գյուղատնտեսության բնագավառի աշխատողները համակված ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումները մինչև վերջ կենսագործելու վճռականությամբ, պայքարում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունն անընդհատ ավելացնելու համար։

Քաղաքական և աշխատանքային վերելքի հետ միասին ռեսպուբլիկայում բուռն թափով ծավալվում է նախընտրական կամպանիան։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ մեր ագիտատորները օրեցօր ուժեղացնում են քաղաքական-բացատրական աշխատանքը ընտրողների լայն շրջանում։

Որպեսզի նախընտրական ագիտացիան լինի ավելի բովանդակալից ու նպատակասլաց, անհրաժեշտ է ընտրողներին հանգամանորեն պարզաբանել ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները։ Պլենումը, որ ամփոփեց անցյալ տարում գյուղատնտեսության զարգացման արդյունքները, նշեց նրա ամենաարագ վերելքի ուղիները և սահմանեց այնպիսի միջոցառումներ, որոնց իրագործումը կապահովի գործի դնելու նոր հնարավորություններ ու ռեզերվներ գյուղատնտեսության արտադրու-





թյան ասպարեզում յոթնամյակի առաջադրանքները հաջող կատարելու համար։

Ինչպես հայտնի է, պլենումը որոշում ընդունեց ՍՄԿՊ հերթական՝ XXII համագումարը հրավիրել 1961 թվականի հոկտեմբերի 17-ին։ Այդ կապակցությամբ մեր ագիտատորները ունկնդիրների համար պարբերաբար զրույցներ պետք է կազմակերպեն ՍՄԿՊ XXII համագումարը արժանավայել գործերով դիմավորելու մասին։ Ունկնդիրներին պարզաբանել, որ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարում է յոթնամյա պլանը, որը էլ ավելի կամրապնդի կոմունիզմի նյութատեխնիկական բազան։ Յոթնամյա պլանով նախատեսված էր առաջին երկու տարում 17 տոկոսով ավելացնել արդյունաբերական արտադրանքը։ Ուրախալի է իմանալ, որ այն ավելացել է 23 տոկոսով։ Այդ միտքն ավելի պատկերավոր դարձնելու նպատակով ագիտատորը նշում է, որ եթե մեր երկրի արդյունաբերության զարգացումը ընթանա այդպիսի թափով, իսկ ամեն ինչ վկայում է, որ այդ թափը կարագացվի, ապա յոթնամյակում արդյունաբերական արտադրանքը կավելանա ոչ թե 80 տոկոսով,

ինչպես նախատեսված էր պլանով, այլ մոտավորապես կրկնակի չափով։

Այս օրերին ագիտացիոն զրույցի համար առատ նյութ է տալիս ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը։ Ռեսպուբլիկայի աշխատավորները, ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի, ստանձնելով բարձր պարտավորություններ, այժմ ուժ ու եռանդ չեն խնայում այն ժամանակին և բարձր ցուցանիշներով կատարելու համար։ Ուստի անհրաժեշտ է, որ ամեն մի ագիտատոր ունկնդիրներին, որոնց հետ նախընտրական կամպանիայի ժամանակ նա շատ է հանդիպում, տեղյակ պահի, թե ով ինչպես է կատարում սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները, խրախուսի աշխատանքի առաջավորներին և ընկերական օգնություն կազմակերպի ետ մնացողներին, որպեսզի նրանք նույնպես պատվով կատարեն իրենց խոստումը։

Հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարի հրավիրման լուրը քաղաքական և աշխատանքային նոր վերելք է առաջ բերել մեր մեծ երկրում։ Յուրաքանչյուր ընտրող սիրով ցանկանում է լսել այն փառավոր հաղթանակների մասին, որ սո-





վետական ժողովուրդը ձեռք է բերում արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում։ Նրա այդ ցանկությունը պետք է կատարվի։

Ագիտացիոն զրույցի հիանալի թեմա կարող է լինել պարտիայի և ժողովրդի մեծ միասնությունը, որը այնքան վառ կերպով դրսևորվում է այժմ, նախընտրական կամպանիայի այս օրերին։ Պարտիայի և ժողովրդի մեծ միասնությունը թեմայով զրույց անցկացնելիս ագիտատորները ունկնդիրներին պատմում են այն մասին, որ Կոմունիստական պարտիան չունի ավելի բարձր շահեր, քան հոգատարությունը սովետական մարդկանց բարօրության, մեր ամբողջ կյանքի բարգավաճման նկատմամբ։ Պարտիան ներքին և արտաքին քաղաքականության ասպարեզում իրագործում է այնպիսի միջոցառումներ, որոնք բարձրացնում են Սովետական պետության հզորությունն ու հեղինակությունը, ժողովրդի բարեկեցությունը, ուժեղացնում են համաշխարհային սոցիալիստական լագերը և ամրապնդում խաղաղության գործը։

Նախընտրական կամպանիայի այս եռուն շրջանում ընտրողների հետ հաճախակի զը-

րույց պետք է ունենալ նաև ընտրությունների կանոնադրության շուրջը։ Նրանց մանրակրկիտ կերպով պարզաբանել ընտրությունների կարգը։ Չէ՞ որ ընտրությունների կանոնադրությունը քաղաքական մեծ կարևորություն ունեցող փաստաթուղթ է, որով սովետական քաղաքացին իրագործում է իր ընտրական իրավունքը։

Ռեսպուբլիկայում արդեն ավարտվել է տեղական Սովետների դեպուտատության թեկնածուների առաջադրումը։ Շուտով կավարտվեն նաև նրանց գրանցումները։ Դեպուտատության թեկնածուներ են առաջադրված մեր ռեսպուբլիկայի լավագույն մարդիկ, որոնցով իրավամբ պարծենում են Սովետական Հայաստանի աշխատավորները։ Ահա, օրինակ, Երևանի Լենինյան շրջանից քաղսովետի դեպուտատության թեկնածուներ են առաջադրված բանվորուհիներ Հռիփսիկ Երեմի Խաչատրյանը, Հասմիկ Մըկրտչի Խաչատրյանը, բժիշկ Մկրտիչ Մարտիրոսի Դալլաքյանը, ուսուցչուհի Անահիտ Միքայելի Բակունցը, պրոֆեսոր-դոկտոր Առաքել Գևորգի Առաքելյանը, ավտովարորդ Աղվան Գևորգի Եփրեմյանը, բանվոր Հակոբ Գևորգի Թանաքաչյանը, Ստալինյան շրջանից՝ բանվորուհիներ Մարուսյա Գեղամի Լալայանը, Բավական Սաղաթելի Ղարիբյանը, Անահիտ Սամսոնի Սեդրակյանը, Նինա Արտյոմովնա Պաբերեժևան և շատ ուրիշներ։

Այս օրերին մեր ագիտատորների կատարած շնորհակալ աշխատանքներից մեկն էլ այն կլինի, որ նրանք ընտրողների լայն շրջանում սիստեմատիկաբար ագիտացիա մղեն դեպուտատության թեկնածուների օգտին։ Ամենօրյա զրույցների ընթացքում ընտրողներին պարզաբանեն դեպուտատության թեկնածուների այն հիանալի աշխատանքները, որ նրանք կատարում են ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, ուսումնական հաստատություններում և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում։

Դեպուտատության թեկնածուները մեր երկրի արժանավոր զավակներն ու դուստրերն են։ Նրանք անդադրում պայքարում են մեր Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման համար։ **Ձայն տանք դեպուտատության մեր թեկնածուների օգտին։ Բոլորս դեպի ընտրությունները։**

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ԵՐՐՈՐԴ ՏԱՐՈՒՄ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի այս տարվա Հունվարյան պլենումը քննության առավ «Հողագործության ու անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» հարցը։ Պլենումը նշեց, որ 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, երկրում ամբողջությամբ վերցրած ավելի է գնվել միս՝ 372 հազար տոննա, կաթ՝ մեկ միլիոն 382 հազար տոննա, ձու՝ 838 միլիոն հատ, որը վկայում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման մասին։*

*Պլենումում նշվեց նաև այն, որ 1960 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունն աճել է մեկ*



*և կես անգամ, իսկ գնումներինը՝ ավելի քան երկու անգամ, կաթինը՝ համապատասխանորեն 1,7 և 2,5 անգամ։*

*Այս ամենը խոսում է գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերի աճման մասին, որպիսին մեր երկիրը ձեռք է բերել վերջին յոթ տարիների (1953—1960 թթ.) ընթացքում։ Վերջին յոթ տարում գրեթե կրկնապատկվել է բնակչությանը վաճառվող գյուղատնտեսական մթերքների քանակը։*

*Պլենումում նշվեց նաև այն հանգամանքը, որ այդ բոլոր հաջողություններին զուգընթաց երկրում աճում է բնակչության թիվը, ավելանում են նրա եկամուտները, հետևաբար՝ և նրա պահանջմունքները։ Ահա թե ինչու անհրաժեշտություն է զգացվում ավելացնել պարենային արտադրանքի, հատկապես մսի, մսամթերքների, կաթնամթերքների, ձվի արտադրությունն ու նրանց վաճառքը բնակչությանը։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացման խնդիրն իրագործելու նպատակով մեր պարտիան ու կառավարությունը անում են ամեն ինչ գյուղատնտեսությունը տրակտորներով, գյուղատնտեսական գործիքներով, հանքա-*

յին պարարտանյութերով ու շինանյութերով բավարարելու համար։ Նախատեսվում են նոր միջոցառումներ, որոնք հնարավորություն կտան գյուղատնտեսությունն այնպես վարելու, որ այն ենթակա չլինի բնության քմահաճույքներին։ Այդ նպատակով խոշոր աշխատանքներ կկատարվեն ոռոգելի հողատարածությունների ընդարձակելու ուղղությամբ։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի սոցիալիստական դաշտերի աշխատավորները։ Այսպես, հացահատիկի բերքատվությունը 1960 թվականին ամեն մի հեկտարից հասավ 10,7 ցենտների, 1959 թվականի 9,5 ցենտների դիմաց։ Համապատասխանորեն բարձրացել է նաև մյուս գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, բամբակինը՝ 22,7-ից հասել է 26,8 ցենտների, շաքարի ճակնդեղինը՝ 273-ից 306 ցենտների։ Ծխախոտի հեկտարի միջին բերքատվությունը հասել է 15,5 ցենտների, նախորդ տարվա 14,4-ի փոխարեն։

Այսպիսով, շաքարի ճակնդեղի, ինչպես նաև բամբակի համախառն բերքատվությամբ ռեսպուբլիկան ապահովեց յոթնամյակի վերջին տարվա՝ 1965 թվականի համար նախատեսված մակարդակը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում որոշ հաջողություններ են ձեռք բերվել նաև անասնաբուծության բնագավառում։ 1959 թվականի համեմատությամբ անցյալ տարի մսի արտադրությունը ավելացավ 22 տոկոսով, կաթինը՝ մոտ 10, ձվինը՝ 82 տոկոսով։ Այսինքն, 1960 թվականին 100 հեկտար օգտագործվող հողատարածության հաշվով արտադրվել է 35 ցենտներ միս, 153 ցենտներ կաթ, 14 հազար ձու։ Այս ամենի շնորհիվ ավելացել է պետությանը վաճառվող անասնապահական մթերքների քանակը, մսինը՝ 30, կաթինը՝ 19, ձվինը՝ 91 տոկոսով։

Լուրջ հաջողությունների հասան Վեդու, Արտաշատի, Էջմիածնի շրջանների բամբակագործները, որոնք միջին հաշվով մեկ հեկտարից հավաքեցին 27—32 ցենտներ բամբակի հումք։ Ախուրյանի, Սպիտակի շրջանների ճակնդեղագործները ամեն մի հեկտարից հավաքեցին 301—308 ցենտներ բերք։

Շամշադինի, Թալինի, Աշտարակի, Բասարգեչարի և ուրիշ շրջանների ծխախոտագործները միջին հաշվով հեկտարից հա-

վաքեցին 21—25 ցենտներ ծխախոտի հումք։

Անասնաբուծության գծով հատկապես լուրջ նվաճումների հասան Աղինի, Շամշադինի, Շահումյանի, Նոյեմբերյանի և շատ ուրիշ շրջանների անասնաբույծները, որոնք զգալիորեն ավելացրին մսի, կաթի, բրդի, ձվի արտադրությունը։ Ավելի քան 2.100 կովկիթներ մեկ ֆուրաժային կովից կթեցին 2.100—5.800 կիլոգրամ կաթ, մոտ 600 հովիվներ յուրաքանչյուր խուզվող ոչխարից ստացան 3,5—5,5 կիլոգրամ բուրդ, 400 խոզապահներ մեկ մերունից ստացան և աճեցրին 12—18 խոճկոր, 350 թռչնապահներ յուրաքանչյուր ածան հավից ստացան 105—155 ձու։

Անասնաբուծական մթերքների ավելացումն ապահովելու համար առաջնակարգ տեղ պետք է հատկացնել անասնակերի կուտակմանը։ Անցյալ տարի անասնակերի անբավարարության և շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում անասունների վատ խնամքի հետևանքով անասունների կորուստը հասավ մեծ քանակի։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումում ընկեր Խրուշչովի արտասանած խորիմաստ ճառը նորանոր ու-



ղիներ է նախանշում սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հուժկու վերելքի համար։

Հունվարյան պլենումը հատկապես ընդգծում է, որ այժմ գլխավորը եղած հնարավորություններն առավել լրիվ չափով օգտագործելն է։

Այս տարի շեշտակիորեն պետք է բարձրացվի բոլոր կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։ Նախատեսվում է ընթացիկ տարում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից հասցնել 12—13 ցենտների, 30—35 հազար հեկտարով ընդարձակել հացահատիկային կուլտուրաների, հատկապես եգիպտացորենի ցանքատարածությունները։ Հատուկ ուշադրություն կդարձվի ցածրադիր վայրերի ջրովի տարածություններում եգիպտացորենի խոզանացանքսերի ընդարձակմանը. այդ տարածությունները պետք է հասցնել 5,5—6 հազար հեկտարի։ 10—11 հազար հեկտար եգիպտացորենի ցանքատարածությունների վրա անհրաժեշտ է ապահովել միջին հաշվով հեկտարից 35—38 ցենտներ բերքի ստացումը։ Խնդիր է դրվում ապահովել 35 հազար տոննա բամբակի, 12 հազար տոն-

նա ծխախոտի, 110 հազար տոննա շաքարի ճակնդեղի համախառն բերքի ստացումը։

Առանձնահատուկ ուշադրություն է դարձվելու խաղողագործության և պտղաբուծության վրա։ Ընթացիկ տարում գցվելու են 5 հազար հեկտար խաղողի և 4 հազար հեկտար պտղատու նոր այգիներ։ Նախորդ տարվա համեմատությամբ խաղողի համախառն բերքը ավելանալու է ավելի քան 58 և մյուս մրգերինը՝ 16 տոկոսով։ Այդ ապահովելու համար առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձնել խաղողի և պտղատու այգիների մշակությանն ու խնամքին, հատկապես ուժեղացրած պայքար պետք է կազմակերպել խաղողի վազերի և պտղատու ծառերի վնասատուների ու հիվանդությունների դեմ։

Այս տարի առանձնապես ուշադրություն է դարձվելու անասնաբուծության զարգացման հարցին. տավարի գլխաքանակը ավելանալու է 6, որից կովերինը՝ 10 տոկոսով։

Ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած բոլոր սեկտորների գծով մսի արտադրությունը պետք է հասցվի (կենդանի քաշով) 86 հազար տոննայի, այդ թվում կոլտնտեսություններում և սովխոզներում՝ 54 հազար տոննայի կամ 1960 թվականի հա-



մեմատությամբ աճը կազմելու է 20,6 տոկոս, կաթի աճը կազմելու է 15 տոկոս։ Բրդի արտադրությունն ավելացվելու է 19,3, ձվինը՝ 64 տոկոսով։

Այսպիսի արդյունքների հասնելու դեպքում հնարավոր է ապահովել նաև պետությանը 2 միլիոն փութ հացահատիկի վաճառքը, ինչպես նաև 1961 թվականին պետությանը պլանով նախատեսվածից ավելի վաճառել միս՝ 7, կաթ՝ 13, բուրդ՝ 11 և ձու՝ 24 տոկոսով։

Իսկ այսպիսի արդյունքների հասնելու համար անհրաժեշտ է այժմվանից լուրջ աշխատանք կատարել բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում, բազմակողմանիորեն նախապատրաստվել գարնան գյուղատնտեսական աշխատանքներին։ Բարձր կազմակերպվածությամբ և կարճ ժամկետում ու որակով կատարել գարնան գյուղատնտեսական աշխատանքները, ինչպես նաև բարելավել ցանքսերի հետագա մշակությունն ու խնամքը։

Այս տարվա փետրվարի 6—7-ը Թբիլիսիում տեղի ունեցած Անդրկովկասի երեք ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի հողագործների և անասնաբույծների առաջավորների խորհրդակցու-

թյունում, որին մասնակցում էր ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովը, քննության առնվեցին սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի հրատապ հարցերը՝ Հունվարյան պլենումի պատմական որոշումների լույսի տակ։ Խորհրդակցությունում ընկեր Խրուշչովի ծրագրային ճառը նորանոր ուղիներ նըշեց գյուղատնտեսության հետագա առաջընթացի համար։

Այժմ Սովետական Միության անծայրածիր երկրում համաժողովրդական պայքար է ծավալվում Կոմունիստական պարտիայի XXII համագումարը արտադրական մեծ նվաճումներով դիմավորելու համար։ ՍՍՌՄ բազմազգ ժողովուրդների ընտանիքում մեր ռեսպուբլիկայի սոցիալիստական դաշտերի աշխատողները ջանք չեն խնայում նորանոր նվաճումներով դիմավորելու պարտիայի առաջիկա համագումարը։

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրի տեղակալ



# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԸ



Մեր ռեսպուբլիկայի աչքի ընկնող կուլտուրական օջախներից մեկը Ռևոլյուցիայի պետական թանգարանն է, որը բացվեց 1960 թվականի նոյեմբերի 30-ին։

Թանգարանի սրահներում տեղադրված մեծաթիվ էքսպոնատների միջոցով այցելուները հնարավորություն են ունենում ծանոթանալու հայ ժողովրդի ռևոլյուցիոն անցյալի և այն ականավոր ռևոլյուցիոն գործիչների հետ, որոնք պայքարել են Հայաստանում Սովետական իշխանության հաստատման համար։

Հենց առաջին սրահը զարդարում են Վ. Ի. Լենինի և առաջին հայ մարքսիստների՝ Բ. Կնունյանցի, Ա. Զուրաբյանի, Ի. Լալայանցի, Վ. Վարդանյանի նկարները։

19-րդ դարի վերջերին կապիտալիզմի զարգացման հիման վրա Անդրկովկասում սկսում է աճել բանվորական շարժումը, ստեղծվում են առաջին մարքսիստական կազմակերպությունները, որոնց ըն-

տեղծողները հանդիսացան Ս. Շահումյանը, Ի. Ստալինը, Բ. Կնունյանցը, Մ. Ցխակայան, Ս. Սպանդարյանը, Ֆ. Մախարաձեն և ուրիշներ։

Ահա այցելուի առջև է Ս. Սաֆյանի «Ս. Շահումյանը Ջալալ-Օղլու մարքսիստական խմբակում» աշխատանքը։ Սա այն առաջին մարքսիստական խմբակն էր, որը կազմակերպեց Ստ. Շահումյանը Ջալալ-Օղլիում (այժմ Ստեփանավան) 1898 թվականին։

Այցելուն մոտենում է հերթականորեն տեղադրված էքսպոնատներին, որոնք նրան պատմում են Ս. Շահումյանի կյանքի և գործունեության աչքի ընկնող դեպքերի մասին։ Նկարներից մեկում Ս. Շահումյանին տեսնում ենք Ռիգայի Պոլիտեխնիկական ինստիտուտի 1901 թվականի ուսանողական գործադուլի մասնակիցների շրջանում։ Այդ նույն սրահում է գտնվում ուսանողական հուզումներին մասնակցելու պատճառով Ս. Շահումյանին ինստիտուտից հեռացնելու վերաբերյալ փաստաթուղթը։

Դիտողի համար առանձնահատուկ հետաքրքրություն է ներկայացնում այն ցուցափեղկը, որտեղ ցուցադրվում են «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» անդամների անձնական իրերը։ Միությունը կազ-



մակերպվել էր 1902 թվականին Ս. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ա. Զուրաբյանի, Ս. Խումարյանի, Մ. Մելիքյանի, Ս. Խանոյանի ղեկավարությամբ։

Թանգարանի սրահներից մեկում իր արժանի պատկերումն է գտել Հավլաբարի ընդհատակյա տպարանը, որը մեծ դեր խաղաց մարքսիստական գրականության տարածման գործում։

Քիչ հետաքրքրություն չի ներկայացնում այն գրաֆիկ ստեղծագործությունը, որտեղ այցելուն տեսնում է 1903 թվականին Ժնևում Ս. Շահումյանի և Վ. Ի. Լենինի ունեցած հանդիպումը, որի ժամանակ նրանք խոսում են հայերեն մարքսիստական գրականություն ստեղծելու անհրաժեշտության մասին։ Այս նույն սրահում էլ կարելի է տեսնել «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ը հայերենով՝ Ս. Շահումյանի թարգմանությամբ։

Պատմական դեպքերն ընթանում են առաջ, վրա է հասնում 1905—1907 թվականների առաջին ռուսական ռևոլյուցիան, որն իր ոլորտի մեջ է առնում նաև Հայաստանը։ 1905 թվականին բոլշևիկների ղեկավարությամբ Երևանում, Ալավերդում, Ալեքսանդրոպոլում, Ղարսում և այլ քաղաքներում տե-

զի են ունենում մասսայական ցույցեր, ո֊րոնք գեղարվեստորեն արտացոլված են թանգարանի սրահները զարդարող մի շարք ստեղծագործություններում։ Ահա դրանցից մի երկուսը. «Ալավերդու բանվորների գործադուլը Ս. Շահումյանի և Ս. Սպանդարյանի գլխավորությամբ», որը պատկանում է նկարիչ Ս. Գալստյանի վրձինին, նկարիչներ Ա. Մելքոնյանի և Ա. Մանուչարյանի աշխատանքը, որը պատկերում է «Ս. Սպանդարյանը բարիկադների վրա» և շատ այլ գործեր։

Առանձնահատուկ ուշադրությամբ է դիտվում Կամոյին նվիրված ստենդը, որտեղ պատկերվում են նրա ռևոլյուցիոն գործունեության առանձին դրվագները։ Դիտողի մոտ կենդանի հետաքրքրություն է առաջացնում Կամոյի հեծանիվը՝ Յա. Մ. Սվերդլովի նվերը, որի վրա էլ հենց նա զոհվեց 1922 թվականին։

Հաջորդ սրահը այցելուին պատմում է առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին սուլթանական Թուրքիայում բնակվող հայերի նկատմամբ գործադրված գազանությունների մասին, որոնց պատճառով այդ շրջանում կոտորվեց ավելի քան մեկ միլիոն հայ։ Ահա հայ ժողովրդի պատ-



մական այդ եղեռնական դեպքերն են պատկերում Զ. Գրիգորյանի «Մղձավանջային օրեր» նկարը և այլ գործեր։

1917 թվական։ Վրա են հասնում փետրվարյան ռևոլյուցիայի փոթորկալի օրերը։ Հաղթում է բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան։ Երկարատև էմիգրացիայից հետո Ռուսաստան է վերադառնում Վ. Ի. Լենինը։ Ահա գեղարվեստական գործերից մեկն էլ հենց պատկերում է զրահագնացքի վրա Վ. Ի. Լենինին արտասանելիս այն ճառը, որով նա մասսաներին կոչ էր անում պայքարի ելնել՝ հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի։

Պատմությունը գնալով ծավալվում է։ Դեպի Անդրկովկաս է թռչում Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի լուրը։ Ահա դիտողի առջև են Ալեքսանդրոպոլի կայազորի միտինգների, Ջալալ-Օղլու աշխատավորների և զինվորների ժողովների, Ղարսի կայազորի զորամասերի ժողովների և այլ արձանագրություններ, որոնք վառ արտահայտությունն են այն խանդավառության, թե Հայաստանում ինչպես է ընդունվել Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի լուրը։ Նորից այցելուի առջև է Ս. Շահումյանի անմեռ կերպարը։ Շատ գեղեցիկ ու խոսուն

է դիտողին մատուցվում Բաքվի կոմունայի պատմությունը։ Նկարիչ Սեդրակյանի «Քսանվեց» մեծածավալ գեղարվեստական կոմպոզիցիան պատկերում է, թե ինչպես գիշերով գնացքից ցած են իջեցնում 26 կոմիսարներին, որոնք արհամարհելով մահը արտասանում են իրենց վերջին խոսքերը՝ «Մեռնում ենք հանուն կոմունիզմի»։ Այդ նույն սրահում գտնվում են 26 կոմիսարների նկարները, Բաքվի կոմունայի դեկրետները և շատ այլ նյութեր։ Շատ մեծ հետաքրքրությամբ է դիտվում բրոնձի այն հատիկը, որի վրա փորագրված է 26 կոմիսարների գնդակահարությունը։

1919 թվականի վերջերին, 20 թվականի սկզբներին Հայաստանում ամրապնդվում և վերականգնվում են կոմունիստական կազմակերպությունները։ Ստեղծվում է Արմենկոմ, որի մեջ են մտնում Ս. Ալավերդյանը, Մ. Կասյանը, Ա. Մռավյանը և մյուսները։ Գնալով Հայաստանում հասունանում է ռեվոլյուցիոն իրադրությունը։ Մայիսմեկյան ցույցեր են կազմակերպվում Հայաստանի շատ քաղաքներում։ Թանգարանում շատ հաջող է ներկայացվում Երևանի ցույցը։ «Ս. Ալավերդյանի ելույթը մայիսմեկյան միտինգում» գործը այցելուին պատմում է



այն մասին, թե ինչպես դաշնակցական պառլամենտի պատշգամբից Ս. Ալավերդյանը ժողովրդին ապստամբելու կոչ է անում։ Նույն այդ սրահի կենտրոնական մասում դրված է «Վարդան Զորավար» զրահագնացքի մակետը, որը մայիսմեկյան ապստամբության նախապատրաստման կենտրոնն էր։ Այս նույն զրահագնացքում է կայացել Արմենկոմի մայիսի 7-ի խորհրդակցությունը, որտեղ դրվել է ապստամբության նախապատրաստման հարցը։ Սովետական իշխանությունն առաջինը հաստատվել է Ալեքսանդրոպոլում, որի վերաբերյալ փաստաթղթերին կարելի է ծանոթանալ այդ նույն սրահում։ Ցուցափեղկերից մեկում ցուցադրվում է Ալեքսանդրոպոլի կոմիտեի նամակը՝ ուղղված Արմենկոմին։ Շատ ուշագրավ է լուսային այն քարտեզը, որի վրա արտացոլվում է մայիսյան ապստամբությունը Հայաստանում։ «Արգինայի հերոսական մարտը» դիորամայում պատկերվում է իրոք հերոսական այն պայքարը, որ հայ ժողովուրդը մղել է դաշնակների դեմ։ Բայց և այնպես դաշնակներին հաջողվել է խեղդել մայիսյան ապստամբությունը և հաշվեհարդար տեսնել ռևոլյուցիոն գործիչների, ինչպես՝ Ս. Ալավերդյանի, Հ. Սարուխանյա-

նի, Բ. Ղարիբջանյանի, Ս. Մուսայելյանի, Ե. Սեյանի, Լ. Միչյանի և շատ ուրիշների հետ։ Նույն այս սրահում ցուցադրվում են «Սպարտակ» երիտասարդական կազմակերպության անդամների, ինչպես նաև մայիսյան ապստամբության հերոսների անձնական իրերը։

Մայիսյան ապստամբության ճնշվելուց հետո հայ ժողովրդի դրությունը չափազանց վատթարանում է։ Դաշնակների տիրապետության օրոք, ինչպես ասել է Ա. Միկոյանը, Հայաստանը դարձել էր որբերի և աղքատության երկիր։ Ահա հենց այս դժվարին կացության մեջ Հայաստանին օգնության ձեռք է մեկնում ռուս ժողովուրդը։ Ապստամբած ժողովրդի խնդրանքով օգնության է գալիս 11-րդ Կարմիր Բանակը, որի մուտքը Հայաստան շատ գեղեցիկ է պատկերում ձայնային դիորաման։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատվում է Սովետական իշխանություն։ Դիտողի համար մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն հեռագրական ապարատը, որով Վ. Ի. Լենինին են հաղորդել Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելու լուրը և այն հեռագիրը, որով հայ ժողովրդին նա ողջունել է այդ առթիվ։



Թանգարանն ունի նաև Հայաստանի քաղաքացիական կռիվներին նվիրված բաժին, որտեղ կարելի է տեսնել բազմաթիվ արժեքավոր էքսպոնատներ։ Այստեղ են գտնվում երկու սովետական օդաչուների՝ Մելնիկովի և Կուզրինի նկարները, որոնք փետրվարյան ավանտյուրայի այդ դաժան օրերին թռչում են Հայաստան՝ որպես օգնություն բերելով 47 կգ. ոսկի։ Այստեղ ցուցադրվում է նաև այն քարտեզը, որով օդաչուներն առաջնորդվել են դեպի Հայաստան։ Փետրվարյան ավանտյուրայի լիկվիդացման գործում մեծ դեր խաղացին Ա. Մյասնիկյանը, Ս. Կասյանը, Գ. Աթարբեկյանը, Ա. Խանջյանը և ուրիշներ։

1921 թվականի մայիսի 21-ին Հայաստանում կազմակերպվում է առաջին բանվորագյուղացիական կառավարությունը, որի նախագահն էր Ա. Մյասնիկյանը։ Թանգարանում ցուցադրվում է նաև Ա. Մյասնիկյանի կաբինետը։

Թանգարանի վերջին սրահը նվիրված է 40 տարիների ընթացքում Սովետական Հայաստանի ձեռք բերած հաջողություններին։

Լ. ՂԱՐԱԳՈՒԼՅԱՆ

## ԱՃՈՒՄ ՈՒ ԾԱՎԱԼՎՈՒՄ Է ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Նախաձեռնելով և ծավալելով կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների, ցեխերի, բրիգադաների բարձր կոչման արժանանալու մրցություն, Լենինյան կոմերիտմիությունը նոր փառապանծ էջ գրեց իր հերոսական պատմության մեջ։

Ընդամենը երկու տարի է անցել այն ժամանակից, ինչ ծնվել է այդ հիանալի մրցությունը, բայց արդեն այժմ նրանում ընդգրկված են ավելի քան 5 միլիոն բանվորներ ու կոլտնտեսականներ, բժիշկներ, տրանսպորտի, առևտրի և այլ բնագավառների աշխատողներ։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների ու հարվածայինների կոչման արժանանալու մրցությունը օրեցօր աճում և ծավալվում է նաև Երևանի ձեռնարկություններում ու հիմնարկներում։ Նորանոր բրիգադաներ, հերթափոխներ, տեղամասեր, ցեխեր, իսկ այժմ նաև գործարաններ ու ֆաբրիկաներ են ներգրավվում այդ հայրենասիրական



շարժման մեջ։ Մայրաքաղաքում 527 բրիգադաներ ու տեղամասեր, 64 ցեխեր և 4 ձեռնարկություններ պայքարում են այդ բարձր կոչմանն արժանանալու համար։ Դրանցից 167 կոլեկտիվներ արդեն արժանացել են այդ կոչմանը։ Ամբողջ ռեսպուբլիկայում գովեստով են խոսում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ղեկավարներ՝ Հայէլեկտրո գործարանի բանվորուհի Գրետա Ստեփանյանի, Կաբելի գործարանի էմալապատող Ալբերտ Կիրակոսյանի, Ժամացույցի գործարանի բանվորուհի Ալիսա Այվազյանի, Ոսկերչական ֆաբրիկայի բանվոր Արտյուշա Սարոյանի և շատ ու շատ ուրիշ առաջավորների մասին։

Մեկ տարի առաջ Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում Ս. Մինասյանի ղեկավարած բրիգադան ընդգրկվեց կոմունիստական աշխատանքի կոչման արժանանալու համար մրցության մեջ, և պետք է նշել որ նա օրվա առաջադրանքները սկսեց կատարել 140—150 տոկոսով։ Բրիգադան պայքարում է լիարժեք վայրկյանի համար, որի շնորհիվ մամլակի արտադրողականությունը բարձրացել է 20 տոկոսով։ Բացի այդ, բրիգադայի բոլոր անդամները պայքարում են

միայն բարձրորակ արտադրանք տալու համար։ Եվ այդ նրանց հաջողվում է։

Բրիգադան աչքի է ընկնում ոչ միայն լավ աշխատանքով, այլև ընկերասիրությամբ։ Օրինակ Ս. Մինասյանի բրիգադայի անդամներից Ջ. Ղազանչյանը, Ս. Հակոբյանը և Ս. Ներսիսյանը, երբ եկան արտադրություն, չունեին միջնակարգ կրթություն, իսկ այժմ ընկերների օգնությամբ նրանք սովորում են բանվորական դպրոցում և հաջողությամբ ուսուցումը զուգակցում աշխատանքի հետ։

Բրիգադայի անդամները ակտիվորեն մասնակցում են հասարակական աշխատանքներին։ Նրանք ընդգրկված են գեղարվեստական ինքնագործունեության մեջ, իսկ բրիգադիր Ս. Մինասյանը վերջերս ընտրվեց ՀԼԿԵՄ Երքաղկոմի բյուրոյի անդամ։

Օրեցօր ընդլայնվում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների գործունեության շրջանակները, հարստանում նրա բովանդակությունը նոր և հիանալի նախաձեռնություններով։ Այսպես, կոմունիստական աշխատանքի շատ կոլեկտիվներում այժմ արդեն մտահոգված են ոչ միայն իրենց անդամների կոմունիստական դաստիարակությամբ, արտադրական հարցերով, այլև լուրջ օգնություն են ցույց տալիս պետական





օրգաններին և հասարակական կազմակերպություններին՝ զանցանքներ թույլ տվող առանձին երիտասարդներին ու անչափահասներին վերադաստիարակելու գործում։ Այսպես օրինակ, 26 կոմիսարների անվան «Արագած» արտելի Տ. Քելեչյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամների հետևողական աշխատանքի շնորհիվ, սխալ ուղու վրա կանգնած 7 երիտասարդներ ու պատանիներ ուղղվել են և հիմա զբաղված են հանրօգուտ աշխատանքով։ Ահա դրանցից մեկը՝ Գագիկ Ղարիբյանը։ Բրիգադայի անդամները իմացան, որ Գագիկը լքել է դպրոցը, անբան կյանք է վարում և թույլ է տալիս հասարակական կարգի խախտումներ։

Շատ հետևողական աշխատանք պահանջվեց Գագիկի բնավորության մեջ տեղ գտած վատ գծերը վերացնելու, նրան վերադաստիարակելու համար։ Դաստիարակչական աշխատանքի հետ միասին բրիգադան օգնեց նրան աշխատանքի անցնելու։ Աշխատանքի անցնելով այնուհետև Գագիկը ընդունվեց բանվորական դպրոց և այժմ սովորում է դպրոցի 6-րդ դասարանում։

Այսպես են աշխատում նաև Կորացնող կահույքի ֆաբրիկայի, Ժամացույցի գործա-

րանի մեխանիկական ցեխի կոմունիստական աշխատանքի բրիգադները։ Կոմունիստական մրցությունը լայնորեն ընդգրկել է մեր կյանքի բոլոր բնագավառները։ Այն արտադրության բնագավառից աճելով՝ թափանցել է սովետական մարդկանց կենցաղը։ Ամենուրեք մրցություն է ծավալվում կոմունիստաբար աշխատելու և ապրելու, կոմունիստական ապրելակերպը սովետական յուրաքանչյուր մարդու կենցաղի մեջ արմատավորելու համար։

Այս տեսակետից ուսանելի աշխատանք է կատարում նաև Թեթև արդյունաբերության տեխնիկումի կոմերիտական կազմակերպությունը։ Տեխնիկումի հանրակացարանում բնակվող ուսանողները մրցություն են ծավալել «Կոմունիստական կենցաղի հանրակացարանի» կոչման արժանանալու համար։ Հանրակացարանի սենյակների միջև ծավալված է գործարար մրցություն, ուսանողները անցել են լրիվ ինքնասպասարկման և հրաժարվել հավաքարարների աշխատանքից։ Այստեղ սիստեմատիկաբար կազմակերպվում են հանդիպումներ հին կոմունիստների, գիտության և կուլտուրայի գործիչների, արտադրության առաջավորների հետ, լսվում են հետաքրքիր դասախոսություններ.



քննարկվում են գեղարվեստական գործեր։ Ուսանողները ակտիվորեն մասնակցում են կուլտ-մասսայական միջոցառումներին։ Հանրակացարանում տիրում է օրինակելի կարգ ու կանոն։ «Հանրակացարանում հասարակական կարգի ոչ մի խախտում»։ Ահա ուսանողների նշանաբանը։

ՍՄԿԿ XXI համագումարում Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Որպեսզի անցում կատարվի դեպի կոմունիզմ, դեպի ամենակատարյալ և ամենաարդար հասարակարգը... մեզ անհրաժեշտ է այժմ դաստիարակել ապագայի մարդուն»։ Հենց կոմունիստական աշխատանքի բրիգադների և հարվածայինների շարժումն էլ հանդիսանում է աշխատավորության կոմունիստական դաստիարակության ամենաարդյունավետ ձևերից մեկը։

Երևանի կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ և օգնությամբ ավելի մեծ թափ հաղորդել այդ հիանալի շարժմանը, ձգտել այն բանին, որ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կամ հարվածայինի կոչման արժանանալու համար պայքարի յուրաքանչյուր պատանի և աղջիկ։

Մ. ԴԱՎԹՅԱՆ

ՀԼԿԵՄ Երևանի քաղկոմի քարտուղար

# ԱՆԸՆԴՀԱՏ ԱՃՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ

(Թվեր և փաստեր)

Կենսագործելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նշած յոթնամյա պլանի վեհ խնդիրները, օրավուր բարգավաճում է մեր մեծ Հայրենիքը, բարձրանում ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Ահա այդ մասին են վկայում հետևյալ թվերն ու փաստերը։

☆ 1960 թվականին ՍՍՌՄ ազգային եկամուտը նախնական տվյալներով կազմեց 144 միլիարդ ռուբլի. 1959 թվականի համեմատությամբ համադրելի գներով ավելանալով 8 անգամ։ Ընդ որում աշխատողների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով 1959 թվականի համեմատությամբ ավելացան 5 անգամ։

☆ 1960 թվականին ավարտվեց բանվորներին և ծառայողներին 7 և 6-ժամյա կրճատ աշխատանքային օրվա փոխադրելը։ Այդպիսով, մեր երկրում բանվորների և ծառայողների աշխատանքային շաբաթվա տևողությունն այժմ կազմում է միջին հաշվով 39.4 ժամ։



☆ Ուրախալի է նշել, որ մեզ մոտ աշխատավորներին կրճատ աշխատանքային շաբաթվա փոխադրելը իրականացավ աշխատավարձի պահպանմամբ։ Իսկ աշխատանքի որոշ ճյուղերում բարձրացվեց ցածր վարձատրվողների աշխատավարձը։

☆ Անցյալ տարվա հոկտեմբերի մեկից սկսվել է աշխատավորներից գանձվող հարկերի աստիճանական վերացումը։

☆ Նախորդ տարվա համեմատությամբ 1960 թվականին ՍՍՌՄ-ում հասարակական սննդի ապրանքաշրջանառությունը համադրելի գներով ավելացել է 10 տոկոսով։ Ըստ պլանի 1959 և 1960 թվականներին ապրանքների վաճառքը բնակչությանը պետք է աճեր 15,4 տոկոսով, այնինչ աճել է 19,6 տոկոսով։

☆ Գերակատարվել է հասարակական սննդի ապրանքաշրջանառության պլանը։ Պլանից դուրս բնակչությանը վաճառվել է 1,1 միլիարդ ռուբլու ապրանք։ 1959 թվականի համեմատությամբ մանրածախ ապրանքաշրջանառությունը ամբողջությամբ վերցրած, համադրելի գներով, ավելացավ 11 տոկոսով։

☆ 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, պետական ու կոոպերատիվ առևտրում հետևյալ ապրանքների վաճառքը կատարվել է այսպես. միս և այլ մսամթերքներ՝ 113 տոկոսով, յուղ՝ 196, կաթ և կաթնամթերք՝ 114, պանիր՝ 113, շաքար՝ 113, բուսանային կուլտուրաներ՝ 137, բամբակե գործվածք՝ 102, բրդե գործվածք՝ 116, տրիկոտաժե-

ղեն՝ 111, լվացքի մեքենա՝ 125, սառնարան՝ 121, հեռուստացույց՝ 132։

☆ Արտաքին առևտրի շրջանառությունը նախորդ տարվա համեմատությամբ աճել է 5 տոկոսով։ Զգալիորեն աճել է մեքենաների և սարքավորումների, ինչպես նաև ժողովրդական սպառման բազմաթիվ առարկաների ներմուծումը։

☆ Մեծ զարգացում է ապրել ժողովրդական կրթությունը։ Բոլոր տիպի հանրակրթական դպրոցներում սովորողների թիվն այս տարի կազմում է 36 միլիոն մարդ կամ մոտ 3 միլիոնով ավելի, քան անցած ուսումնական տարում։

☆ Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, ներառյալ հեռակա և երեկոյան հաստատությունները, սովորում է 4 միլիոն 450 հազար մարդ, որի կեսից ավելին սովորում է բուհերում։ Անցյալ տարի բուհերը տվել են 340 հազար մասնագետ (այդ թվում շուրջ 117 հազար ինժեներներ)։ 1960 թվականի վերջում երկրում կար 350 հազար գիտաշխատող։ Մեկ տարում բժիշկների թիվը աճել է ավելի քան 20 հազարով։

☆ Նույնպիսի առաջընթաց է տեղի ունեցել նաև երկրի կուլտուրական կյանքում։ Երկրի կինոստուդիաները անցյալ տարի թողարկեցին 140 լիամետրաժ կինոնկար։ 1960 թվականին կինո է դիտել 3 միլիարդ 600 միլիոն մարդ, այսինքն նախորդ տարվա համեմատությամբ 90 միլիոնով ավելի։



☆ Անցյալ տարի երաժշտական համերգներ, թատրոնների և կրկեսների ներկայացումներ է հաճախել ավելի քան 245 միլիոն հանդիսական։

☆ Զգալիորեն մեծացել է թերթերի, ամսագրերի և մյուս պարբերական հրատարակությունների տիրաժը։ Անցյալ տարի լույս տեսած միայն գրքերի տիրաժը հասել է մեկ միլիարդ 230 միլիոն օրինակի։

☆ Մեր երկրում մեծ թափ է ստացել նաև բնակարանային շինարարությունը։ Պետական, ինչպես նաև բնակչության միջոցներով ու վարկի օգնությամբ քաղաքներում և քաղաքատիպ վայրերում անցյալ տարի շահագործման է հանձնվել 85 միլիոնից ավելի քառակուսի մետր բնակելի տարածություն, այսինքն 2 միլիոն 400 հազար բարեկարգ բնակարան, իսկ 1959 թվականին՝ 2 միլիոն 237 հազար բնակարան։

☆ 1960 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելի է կառուցվել հանրակրթական դպրոց՝ 40 տոկոսով, հիվանդանոց ու պոլիկլինիկա՝ 25, մանկապարտեզ և մանկամսուր՝ 15 տոկոսով և այլն։ Մանկամսուր և մանկապարտեզ հաճախող երեխաների թիվը մեծացել է շուրջ 460 հազարով։

☆ Աննախընթաց չափերով բարձրացել է նաև մեր ռեսպուբլիկայի աշխատողների նյութական բարեկեցությունը։ Միայն մեկ տարվա ընթացքում, 1960 թվականին, մեր ռեսպուբլիկայի բնակչությունը պետական և կոոպերատիվ առևտրի ցանցից գնել է 504 միլիոն

ղուբլու ապրանք (չհաշված սպառողական կոոպերացիայի կոմիսիոն առևտուրը)։

Պետական առևտրի խանութների քանակը 1953—1959 թվականների ընթացքում 1.156-ից աճելով հասել է 1.433-ի։

☆Պետական և կոոպերատիվ առևտրի գծով ապրանքների առանձին տեսակների վաճառքի աճը 1960 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, բնութագրվում է այսպես. միս և այլ մսամթերքներ՝ 110 տոկոսով, յուղ՝ 112, ձու՝ 150, կաթ և կաթնամթերքներ՝ 115, բամբակե գործվածքներ՝ 110, բրդե գործվածքներ՝ 133, տրիկոտաժեղեն՝ 106, կաշվե կոշիկ՝ 107, տնային սառնարաններ՝ 128, լվացքի մեքենաներ՝ 131, հեռուստացույցներ՝ 161 և այլն։

☆ Եթե 1955 թվականին բնակչությանը վաճառվել է. սառնարան՝ 1.400 հատ, լվացքի մեքենա՝ 1.900, հեռուստացույց՝ ոչ մի հատ, ապա 1959 թվականին սառնարան՝ 7.500, լվացքի մեքենա՝ 9.000, հեռուստացույց՝ 10.500։

☆ Մեծ աշխատանքներ են կատարվում բնակարանային շինարարության ուղղությամբ։ Պետական հիմնարկները, ձեռնարկություններն ու կազմակերպությունները 1960 թվականին շահագործման են հանձնել մոտ 400 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

☆ 1960 թվականին ռեսպուբլիկայում սովորողների թիվը հասել է 377,4 հազար մարդու։ Այս տարի



հանրակրթական բոլոր դպրոցներում միասին վերցրած սովորում է 337,9 հազար մարդ, կամ անցյալ տարվա համեմատությամբ 25 հազարով ավելի։ Միայն 1959 թվականին շահագործման է հանձնվել 14 դպրոց՝ 2.710 աշակերտի հաշվով։

☆ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում այս տարի սովորում է 35 հազար մարդ, որից 20 հազարը՝ բուհերում։ Առանց արտադրությունից կտրվելու սովորողների թիվը (ուսման բոլոր ձևերում միասին վերցրած) հասնում է 34 հազարի։

☆ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները անցյալ տարի տվեցին 6,5 հազար շրջանավարտ, որից 1.000-ը ինժեներներ էին։ 1940 թվականին ռեսպուբլիկայում եղել է ընդամենը 1.067 գիտաշխատող, իսկ 1959 թվականին այդ թիվը հասել է 4.084-ի, որից դոկտորի աստիճան ունի 158 մարդ, գիտությունների թեկնածուի աստիճան՝ 1.431 մարդ։

☆ Եթե 1921—1922 ուսումնական տարում Հայաստանում եղել է ընդամենը մեկ բարձրագույն ուսումնական հաստատություն՝ 490 ուսանողով, ապա 1959—1960 ուսումնական տարում գործել է 11 բուհ՝ 19.103 ուսանողով։

☆ Մենք նույնպիսի հաջողությունների ենք հանդիպում նաև կուլտուրայի բնագավառում։ 1960 թվականի վերջին կինոսարքավորումների թիվը ռեսպուբ-

լիկայում հասնում էր 524-ի կամ 62-ով ավելի նախորդ տարվա նկատմամբ, իսկ 1940 թվականին եղել է ընդամենը 168 կինոսարքավորում։

Անցյալ տարի կինո է հաճախել 16 միլիոն 171 հազար մարդ կամ 565 հազարով ավելի, քան 1959 թվականին։ Ներկայացումներ ու համերգներ է հաճախել մեկ միլիոնից ավելի հանդիսատես։ Եթե 1913 թվականին չի եղել և ոչ մի թանգարան, ապա այսօր ռեսպուբլիկայում գործում է 21 թանգարան։

☆ Մեծ չափերով ավելացել է գրքերի, թերթերի և տպագիր խոսքի մյուս բոլոր տեսակների տպաքանակը։ Միայն անցյալ տարի լույս է տեսել 6 միլիոն 902 հազար օրինակ գիրք, մինչդեռ 1913 թվականին լույս է տեսել ընդամենը 80.000 օրինակ գիրք։ Եթե 1913 թվականին լույս է տեսել ընդամենը 6 անուն թերթ, ապա 1959 թվականին լույս է տեսել 87 անուն թերթ։

☆ Գնալով բարելավվում է բնակչությանը ցույց տրվող բուժօգնությունը։ Զգալիորեն ընդարձակվել է հիվանդանոցների, պոլիկլինիկաների, սանատորիաների և հանգստյան տների ցանցը։ Աշխատավորները ինչպես միշտ օգտվում են ձրի բուժօգնությունից և արտոնյալ գներով կամ անվճար ուղեգրերից։ Եթե 1913 թվականին Հայաստանում եղել է 6 հիվանդանոց և 57 բժիշկ, այսօր ռեսպուբլիկայում կա մոտ 260 հիվանդանոց և մոտ 4.000 բժիշկ։

☆ Կենսաթոշակների գումարը անցյալ տարի ավելացել է 5 տոկոսով։ Աճել են բազմազավակ և միայնակ մայրերի նպաստները։



# ՀՈՒՆԳԱՐ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԸ

Այս տարվա ապրիլի 4-ին լրանում է հունգար ժողովրդի ազգային վերածնության 16-րդ տարեդարձը։ Հունգար ժողովուրդը մեծ և պանծալի հաջողությունների է հասել ժողովրդական իշխանության տարիներին։ Այժմ երկրի արդյունաբերական արտադրանքը 4 անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Հունգարիայի ժողովրդական ռեսպուբլիկան դարձել է ինդուստրիալ ագրարային երկիր։ Բազմահազար մանր ձեռնարկությունների փոխարեն ստեղծվել են սոցիալիստական արդյունաբերության խոշոր ձեռնարկություններ։ Ահա Ստալին Վարոշի մետալուրգիական կոմբինատը, Կապոշվարի, Սեգեդի տեքստիլ կոմբինատները, Չեպելի ծանր մեքենաշինական գործարանը և այլն։ 1949 թվականից հետո երկրում կառուցվել է 100 նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, ստեղծվել են մի շարք նոր ինդուստրիալ քաղաքներ։

Հունգար ժողովրդի հաջողությունները կատաղեցրին նրա թշնամիներին։ Եվ 1956 թվականի աշնանը երկրում գլուխ բարձրացրեց օտարերկրյա իմպերիալիստների և ներքին ռեակցիոն ուժերի կողմից ոգեշնչված հակառևոլյուցիան, որը նպատակադրվել էր տապալել ժողովրդա-դեմոկրատական իշխանությունը և վերականգնել բուրժուական կարգերը։ Հունգար ժողովուրդը իր սոցիալիստական բանվորական պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների օգնությամբ, ջախջախեց ֆաշիստական խռովությունը և կարճ ժամանակում բուժեց երկրին հասցված վերքերը։ Երկրում ծավալելով սոցիալիստական շինարարություն, հունգար ժողովուրդը հաջողությամբ կատարեց ու գերակատարեց ժողովրդական տնտեսության զարգացման 1958—1960 թվականների եռամյա պլանը։ Այժմ արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերով Հունգարիան առաջ է անցել կապիտալիստական մի շարք զարգացած երկրներից։ Այսպես, եթե 1951—1959 թվականներին Հունգարիայի արդյունաբերական արտադրանքի տարեկան աճը կազմել է 10,2 տոկոս, ապա Անգլիայինը եղել է 2,7, ֆրանսիայինը՝ 6,4, Բելգիայինը՝ 2,8 տոկոս։



Հունգարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ուժեղ թափով զարգացավ 1960 թվականին։ Օրինակ, 1957 թըվականի համեմատությամբ 1960 թվականին լեռնային արդյունաբերությունը աճեց 43 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 55, մեքենաշինությունը՝ 59, էլեկտրամեքենաշինությունը՝ 96, քիմիական արդյունաբերությունը՝ 63 տոկոսով և այլն։

Արդյունաբերության արագ վերելքի շընորհիվ զգալիորեն ավելացել է ազգային եկամուտը, բարձրացել է աշխատավորների կենսական և կուլտուրական մակարդակը։

1960 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, Հունգարիայի ազգային եկամուտը ավելացել է 75 տոկոսով։ Ազգաբնակչության բնական աճը, 1938 թվականի համեմատությամբ, ավելացել է 50 տոկոսով։

Ժողովրդական իշխանության տարիներին նորակառույց շենքերում 400 հազար ընտանիք բնակարան է ստացել։ Ռեսպուբլիկայի կառավարությունը նպատակ է դրել առաջիկա մի քանի տարում յուրաքանչյուր ընտանիքի ապահովել նոր, գեղեցիկ և հարմարավետ բնակարանով։ Երկիրը պատած է հազարավոր դպրոցներով, գրադարաններով, թատրոններով և ակումբներով։ Եթե 1945

թվականին Հունգարիայում կար 650 հազար անգրագետ, ապա այժմ անգրագիտությունը վերացված է։ Զարգացման լայն ասպարեզ են ստացել ժողովրդական կրթությունը, առողջապահությունը, գիտությունը։

Ժողովրդական տնտեսության հաջող զարգացումը Հունգարիայի սոցիալիստական բանվորական պարտիայի կենտրոնական կոմիտեին և ժողովրդական կառավարությանը հնարավորություն տվեց լուծելու աշխատավորների կենսամակարդակի բարձրացման հետ կապված մի շարք կարևոր հարցեր։ Այսպես, վերջին տասը տարվա ընթացքում բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրացել է մոտավորապես 64 տոկոսով, իսկ գյուղացիների ռեալ եկամուտներն աճել են 26 տոկոսով։

Հաջողությամբ զարգանում է գյուղատնտեսությունը, հարյուր հազարավոր մենատնտես գյուղացիներ թևակոխել են կոոպերացման ուղին։ Նրանք օրըստօրե ավելի են համոզվում, որ իրենց բարեկեցության միակ ճիշտ ուղին կոլեկտիվ տնտեսության ուղին է։ Եթե 1958 թվականի դեկտեմբերին Հունգարիայում կար 3507 կոլեկտիվ տնտեսություն, ապա 1960 թվականի հունիսին նրանց թիվը հասավ 4426-ի։ Ներկայումս երկրի վարելահողերի ավելի քան 75 տոկոսը պատկանում է սոցիալիստական սեկտորին։

Արագ թափով զարգանում են պետական տնտեսությունները։ Անընդհատ աճում է տրակտորային պարկը։ 1959 թվականին երկրում արդեն կար 31 հազար տրակտոր կամ 7 անգամ ավելի, քան 1935 թվականին։ Տարեցտարի աճում է իրիգացիոն շինարարությունը։ Հունգարիայի քարտեզի վրա գծագրվեց ջրոռոգման ևս մի նոր սիստեմ՝ 98 կիլոմետր երկարություն ունեցող Գլխավոր Արևելյան ջրանցքը։

Երկրում լայնորեն տարածված է սոցիալիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարողների շարժումը։

Ռեսպուբլիկայի աշխատավորների առջև զարգացման նոր հեռանկարներ բացեց 1959 թվականի վերջերին կայացած հունգարական սոցիալիստական պարտիայի 7-րդ համագումարը, որը քննարկեց և հաստատեց ժողովրդական տնտեսության զարգացման 1961—1965 թվականների հնգամյա պլանը և նախանշեց սոցիալիզմի հիմքերի կառուցումն ավարտելու աշխատանքների ծրագիրը։

1961—1965 թվականների ընթացքում արդյունաբերական արտադրությունը պետք է

ավելանա 65—70 տոկոսով, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը՝ 30—32 տոկոսով, ազգային եկամուտը՝ 50 տոկոսով։

Անցած 16 տարիների ընթացքում արմատապես փոխվել է Հունգարիայի միջազգային դրությունը։ Հետևողականորեն պայքարելով խաղաղության համար, Հունգարիան ձգտում է բարի դրացիական հարաբերություններ հաստատել բոլոր երկրների հետ, անկախ նրանց սոցիալական և հասարակական կարգից։ Այժմ նա դիվանագիտական հարաբերություններ ունի 47 երկրների հետ և ակտիվ կերպով մասնակցում է շուրջ 250 միջազգային կազմակերպությունների աշխատանքներին։

Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում, կայուն խաղաղության համար մղվող պայքարում Հունգարիան ընթանում է Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, սոցիալիստական հզոր լագերի բոլոր երկրների հետ միևնույն շարքում։ Այդ մասին վառ և համոզիչ կերպով վկայում է կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների՝ 1960 թվականի նոյեմբերին Մոսկվայում կայացած խորհրդակցության Հայտարարությունը։



Սովետա-հունգարական տնտեսական հարաբերությունների հետագա զարգացման գործում կարևոր ավանդ է հանդիսանում այն, որ 1960 թվականի մայիսին ստորագրվեց ՍՍՌՄ-ի և և ՀԺՌ-ի միջև 1961—1965 թվականների փոխադարձ ապրանքամատակարարումների վերաբերյալ երկարաժամկետ առևտրական համաձայնագիրը։ Այդ հինգ տարում մեր երկրների միջև ապրանքաշրջանառությունը կաճի 60 տոկոսով՝ նախորդ հնգամյակի համեմատությամբ։

Տոնելով Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ազատագրման 16 տարին, մենք բերկրանքով նշում ենք, որ բոլոր հաջողությունների համար հունգար ժողովուրդը պարտական է իր սոցիալիստական պարտիային, որը միասնական է կազմակերպական և գաղափարական տեսակետից, ամուր կանգնած է մարքսիզմ-լենինիզմի հողի վրա, վարում է հետևողական ինտերնացիոնալիստական քաղաքականություն, անձնվիրաբար ծառայում է աշխատավոր ժողովրդին։

Սովետական և հունգար ժողովրդի բարեկամությունը ամուր է և անխախտ։

**Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

# Բ Ա Ռ Ա Ր Ա Ն

## ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐԻ

*(ԿԱՊՎԱԾ «ԱՇԽԱՏԱՆՔ» ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅԱՆ ՀԵՏ)*

**Աշխատանք**. — *Աշխատանքը մարդու և նրան շրջապատող բնության միջև տեղի ունեցող այն պրոցեսն է, երբ մարդիկ իրենց նպատակահարմար գործունեության միջոցով փոխում են բնության նյութերի ձևը և նրանց տալիս իրենց համար օգտակար, իրենց պահանջմունքները բավարարող նյութերի ձև, տեսք: Մարդիկ աշխատանքն իրականացնում են աշխատանքի առարկաների և աշխատանքի միջոցների օգնությամբ: Աշխատանքը մարդկային հասարակության գոյության գլխավոր պայմանն է: Աշխատանքը տարբեր հասարակարգերում հանդես է գալիս տարբեր ձևերով: Օրինակ, նախնադարյան հասարակությունում այն կոլեկտիվ բնույթ էր կրում և աշխատանքի արդյունքները մարդկանց միջև բաշխվում էին հավասար, չկար մարդու շահագործում մարդու կողմից: Մինչդեռ, հենց այն պահից, երբ արտադրության միջոցները դառնում են մասնավոր սեփականություն, աշխատանքը դառնում է շահագործման օբյեկտ:*

*Սոցիալիզմի և կոմունիզմի պայմաններում, քանի որ արտադրության միջոցները կազմում են հասարակության սեփականությունը, վերանում է շահագործումը, և աշխատանքի արդյունքը պատկանում է բոլորին:*

## Նշումների համար

Նշումների համար




## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ս. Հարությունյան, Վ. Պետրոսյան— *Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը հասարակական բարեկեցության բարձրացնելու միջոց է.* գինը 4 կոպ., 40 էջ։

Ա. Ս. Կիրակոսյան— *Տնտեսության պլանաչափ զարգացումը որպես սոցիալիստական երկրների ընդհանուր օրինաչափություն,* գինը 37 կ., 173 էջ։

Ռ. Լեպպ— *Ատոմներ և մարդիկ.* գինը 62 կոպ., 337 էջ։

Ալ. Մարջանյան— *Հայաստանի մեքենաշինության զարգացումը,* գինը 14 կ., 98 էջ։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 5 1961 г.

ՎՖ 00924 Պատվեր 128 Տպաքանակ 9363

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 8 կոպ.